տատի ուխտին յարի :

Մեծագոյն վախը այն է, որ նախապէս կնքուած դաշինքներու հիման վրայ, սուրիական, արաբական ու իրաքեան բանակները միջամտեն ու Յորդանանը իրենց միջեւ բաժնեն։ Այս պարագային, անհաւանական չէ որ Իսրայէլ եւս միջամտէ ու արաբեւիսրայէլեան նոր պատերազմ մը ծագի :

× Մ. Նահանգներու մամուլը ուշի ուշով կը հետեւի Յորդանանի դէպքերուն : Ընդհանուր կարծիքն այն է, որ կացութիւնը բաւական ծանրակշիռ է եթէ ոչ՝ անլուծելի։ «Նիւ Եորք Հերալտ» կը շեշտէ որ Մ. Նահանգները «ամէն հաւանականութեանց պատրաստ» պէտք է ըլլան, ու կ'աւելցնէ. «Անհրաժեշտ է որ Մ. Նահանգներն ու Անգլիա միացեալ քաղաքականութիւն մը վարեն այս հարցին շուրջ։ Ցամենայն դէպս կարելի եղածին չափ շուտով լուծում մը պէտք է գտնել, որովհետեւ եթէ այս պահուս Միջին Արեւելքի որեւէ մէկ անկիւնին մէջ կռիւներ ծագին, կրակը կրնայ տարծուիլ ամբողջ շրջանին մէջ»։ Ուրիշ թերթեր կ'աւելցնեն, որ Յորդանանի ամբողջ ապագան թէական է, որովհետեւ երկրին տնտեսութիւնը հիմնուած է օտար օժանդակութեան վրայ :

× Իսրայէլի քաղաքական շրջանակները կը շեշտեն թէ Յորդանանէն ներս օտար բանակներու մուտքը կը խախտէ ընդունուած գոյավիճակը (սթաթիւ քուօ) եւ անհրաժեշտ կը դարձնէ նոր միջոցառումներ :

× Մոսկուայի ձայնասփիւռը, առաջին անգամ ըլլալով խօսեցաւ Յորդանանի տագնապին մասին, յայտնեց որ Նորաստեղծ պետութեանց մէջ այսպիսի տագնապներ բնական երեւոյթ են, սակայն անբնականը արտասահմանի մէջ անոր շուրջ կատարուած քարոզչութիւնն է :

× Սուրիոյ «յառաջդիմական» մամուլը կոչ կ'ուղղէ ազգային բոլոր ուժերուն՝ «օժանդակել Յորդանանի մէջ Այզընհաւըրի վարդապետութեան դէմ մղուած հերոսական պայքարին»։ Աւելի խոհեմները կը յորդորեն որ «ժողովուրդը իր ամբողջ պաղարիւնութիւնը պահէ»։

ՎԵՐՋԻՆ ԺԱՄ.— Ապտիւլ Նիմր եւս մերժեց դահլիճը կազմել։ Թագաւորը նոր լուծում մը կը փնտռէ :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

### ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ապրիլ 8ին լրացաւ Յառաջի վերահրատարակման 13րդ տարին : Կը խնդրենք մեր բոլոր բաժանորդներէն որ անյապաղ կարգադրեն իրենց առկախ հաշիւները կամ ժամանակին վերանորոգեն իրենց բաժանորդագրութեան շրջանը՝ կանխիկ վճարումներով։ Ապահովելու համար թերթին կանոնաւոր հրատարակութիւնը՝ վարչութիւնը պէտք ունի կանոնաւոր վճարումներու։ Այս առթիւ պարտք կը զգանք շնորհակալութիւն յայտնել մեր այն բաժանորդներուն որոնք իրենց պարտաճանաչութեամբ կը դիւրացնեն մեր գործը։

Փարիզի եւ արուարձաններուն մէջ կարելի է վճարումներ ընել հետեւեալ ընկերներուն :

Անիէռ - Պուա Քոլոմպ.— Արամ Աւետիսեան :

Պանեէօ - Քաշան.— Բարթամ Պասմաճեան :

Շավիլ.— Գրիգոր Կիւլեան :

Իսի, Քլամառ, Մէօտօն.— Երուանդ Ատանալեան :

Սարսէլ - Առնուվիլ.— Արփիար Մարտիրոսեան եւ Կարօ Երանեան :

Ալփորվիլ.— Բարթող Փափազեան :

Իթալի - Քրեմլէն, Պիսէթր - Ժանթիյի.—Արմենակ Ցակոբեան :

Շնորհակալութիւններով՝ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ
42ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Շաբաթ, Մայիս 25, ժամը 21էն սկսեալ, Սէրքըլ Միլիթէրի մէջ :

ՎԱՐՁՈՒ Է

Մայիս 15էն սկսեալ վարձու է սրճարան մը։ Մաքուր կահ կարասիներով պատրաստ յաճախորդ : Շահաւոր գործ։ Պայմաններու համար դիմել տիրոջը :

ԱՐՍԷՆ ՆՈՐՈՅԵԱՆԻ
57, Rue Bernard du Bois, Marseille

## ԶԱՏԿԱԿԱՆ ԼԱՒԱԳՈՅՆ ՉԷՕՐԷՔԸ

ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏՈՒԱԾ Է
ՍՏԵՓԱՆ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ ԿՈՂՄԷ
ՎԱՐՊԵՏ ԱՆՈՒՇԱՎԱՃԱՌԸ
32 Rue de Trévise, Paris 9ème. TAI 65-44

ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

### ՓԱՐԻԶ – Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ-ՄԿՐՏԻՉ

18 Ապրիլ, Աւագ Հինգշաբթի, Յիշատակ Ընթրեաց Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի, առաւօտեան Ս. պատարագ ժամը 10ին, Ոտնլուայ երեկոյեան ժամը 4ին, կարգ Խաւարման երեկոյեան ժամը 8ին։

19 Ապրիլ, Աւագ Ուրբաթ, յիշատակ Չարչարանաց Խաչելութեան եւ Թաղման։ Թափօր երեկոյեան ժամը 5ին։

⁂

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Ապրիլ 16.— Աւագ երեքշաբթի, Յիշատակ Տասն Կուսանաց, ժամը 17ին։

Ապրիլ 18.— Աւագ Հինգշաբթի, Նախատօնակ եւ Ս. պատարագ ժամը 10ին, Ոտնլուայ (երկսեռ խումբով) ժամը 17ին։ Խաւարում ժամը 19.30ին։

(Շար.)

⁂

### ՆԻՍ.— Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻ

18 Ապրիլ, Աւագ Հինգշաբթի, առաւօտ սկիզբ ժամերգութեան ժամը 8ին, Ս. պատարագ ժամը 10ին,, Երեկոյ Ոտնլուայ ժամը 4ին, Խաւարում 7.30ին։

19 Ապրիլ, Աւագ Ուրբաթ։ առաւօտ Խաչելութիւն ժամը 9.30ին, Երեկոյ Թաղում ժամը 4ին :

⁂

### Ս. ԹԱԴԷՈՍ (Մարսէյլ) Ս. ԱՆԹՈՒԱՆ

18 Ապրիլ, Աւագ Հինգշաբթի Տօն հաղորդութեան, առաւօտ փոքրերու Ս. Հաղորդութիւն եւ ժամերգութիւն ժամը 8ին։ Երեկոյեան Ոտնլուայի արարողութիւն ժամը 6ին, Խաւարում ժամը 8ին։

19 Ապրիլ, Աւագ Ուրբաթ, Անապական Թաղում Տեառն, երեկոյեան ժամերգութիւն Թաղման ժամը վեցին։

20 Ապրիլ Աւագ Շաբաթ, առաւօտեան ժամերգութիւն ժամը ութին, երեկոյեան ժամերգութիւն Ճրագալոյցի ժամը 5ին, Ս. պատարագ ժամը 7ին։

⁂

### ՊՈՄՈՆԻ Ս. ԳՐ. ԼՈՒՍ. ԵԿԵՂԵՑԻ

16 Ապրիլ.— Աւագ Երեքշաբթի երեկոյին՝ յիշատակ Տասը Կուսանաց ժամը 6ին :

⁂

### ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Կիրակի, Ծաղկազարդ, ժամը 9.30ին ժամերգութիւն, ուսօրհնէք։ Ժամը 10.30ին ձայնաւոր պատարագ։ Ժամը 16ին երեկոյեան ժամերգութիւն եւ Դռնբացէք : 18 Ապրիլ, Աւագ Հինգշաբթի, ժամը 10ին, ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ։ Ժամը 16ին Ոտնլուայի արարողութիւն։ Ժամը 19ին Խաւարման ժամերգութիւն :

(Շար.)



Imprimerie Araxes, 46, Rue Richer,
Paris (9e) Pro. 05-73.

### ՅԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Դպրոցասէրի շրջանաւարտուհիներու եւ աշակերտուհիներու կողմէ :

Կիրակի, 28 Ապրիլ, կէսօրէ վերջ ժամը 15ին, Րօչֆուքոյի սրահին մէջ, 9պիս, Ավընիւ Տ'Իէնա, Փարիզ, Մեթրօ տ'Իէնա։ Պիտի ներկայացուի Սիպիլի՝

« ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ ՄՐՑԱՆԱԿ»Ը

Մարիվոյէն ֆրանսերէն կատակերգութիւն մը, սիրայօժար մասնակցութեամբ շնորհալի պարուհի Օր. ԱԼԻՍ ՊՕՅԱՃԵԱՆԻ հայկական եւ կովկասեան պարերով :

Երաժշտական պատկերներ սանուհիներու կողմէ :

Տոմսերու գին 1000 եւ 500 ֆրանք :

### Հ. Մ. Ը. Մ. ՄԱՐՍԷՅԼ

Մարսէյլի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը տեղի կ'ունենայ 21 Ապրիլ, (Զատիկ) ժամը 9էն մինչեւ լոյս : Վամբինկի մէջ :

Նուագախումբ ՓՈԼ ՄՕՐԻՍ։

Աթրաքսիօն եւ զանազան անակնկալներ։

Մութ գոյն զգեստը նախընտրելի է :

Մուտք 700 ֆրանք :

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

●

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՀԱՒԿԹԱԽԱՂ

Համաչարսանճագի Հայր. Միութեան Մարսէյլ – Պոմոնի մասնաճիւղի կողմէ :

Այս Շաբաթ ժամը 21ին, Պոմոնի Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ եկեղեցւոյ ժողովրդական սրահին մէջ :

Գեղարուեստական նոխ բաժին :

Սիրայօժար մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ Խաչի Օրը Մարսէյլի մէջ կը տօնուի, մեծ պատրաստութեամբ, Մայիս 11ին, Սալօն Ալհամպրայի մէջ, Նախաձեռնութեամբ Մարսէյլի Շրջ. վարչութեան եւ մասնակցութեամբ բոլոր մասնաճիւղերու :

բանաձեւ մը քուէարկեց Ազգաժողովին եւ ընդհ. քարտուղար Համըրշըլտի դէմ՝ Հունգարիոյ դէպքերուն առթիւ այս վերջիններու բռնած դիրքին դէմ: Ժողովին կը մասնակցէին Ալպանիոյ, Պուլկարիոյ, Խսթոնիայի, Հունգարիոյ, Լեթոնիայի, Լիթուանիոյ, Լեհաստանի, Ռումանիոյ եւ Չեխոսլովաքիոյ տարագիր պետութեանց ներկայացուցիչները:

ԱՇԽԱՐՀԻ բնակչութեան ընդհ. թիւը, 1957ի սկիզբը կը հասնէր երկու միլիառ 770 միլիոնի, ըստ Արեւելեան Գերմանիոյ մէջ հրատարակուած տեղեկագրի մը. աշխարհի բնակչութեան թիւը տարին 30 միլիոն կ՚աւելնայ:

ՀԱՐԱՒԱՅԻՆ Վիէթնամի վարչապետը, Նկօ Տին Տիէմ, Մայիս վեցին Մ. Նահանգներ պիտի այցելէ, ուր պիտի մնայ մինչեւ Մայիս 12:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ Նեպրասքայի եւ Օքլահոմայի շրջաններուն մէջ նոր փոթորիկներու ընթացքին քսան անձեր վիրաւորուեցան, 75 բնակարաններ քանդուեցան եւ աւելի քան երկու հարիւր հոգիներ անպատսպար մնացին:

ԹՈՒՐՔԻՈՅ մէջ վեց անձեր մեռան վերջին երկրաշարժներուն ընթացքին:

ՄԱՐՆԻ ճակատագրական կռիւներուն մասնակցող թաքսի մը պիտի ցուցադրուի Մ. Նահանգներու մէջ: Ինչպէս յայտնի է, 1914ին Փարիզի թաքսիներն էին, որ շահեցան Մարնի ճակատամարտը:

---

### ՄԵԾԱՐԱՆՔ Պ. ՖՐԷՏԷՐԻՔ ՖԷՅՏԻԻ

Հայ լեզուի դասախօս նշանակուած ըլլալով Արեւելեան Լեզուներու պետական վարժարանին մէջ (Փարիզ), կազմակերպուած է

### ՊԱՏՈՒՈՅ ՀԱՑԿԵՐՈՅԹ ՄԸ

Նախագահութեամբ կաթողիկոսական պատուիրակ Եւրոպայի Հայ Թեմին՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Մայիս 10ին, Ուրբաթ երեկոյ, ժամը 8ին Փարիզեան սրահի մը մէջ: Սեղանակիցներու թիւը սահմանափակ:

Անոնք որ կ՚ուզեն արձանագրուիլ, այժմէն դիմեն հետեւեալ հասցէին.—

Նուպար Յովհաննէսեան,

14 Rue du Soleil, Paris (19)
C.C.P. 7065-15 Tél. MEN 41-67

Ճաշագին 1.600 Ֆր.: Արձանագրուիլ մինչեւ Մայիս հինգ:

---

### ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՀԱՆԴԷՍԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մայիս հինգին, առտուան ժամը 9ին, Վարիէթէի մէջ:

Նախաձեռնութեամբ եւ հովանաւորութեամբ երեք յարանուանութեանց եւ ազգ. վարչութեան, մասնակցութեամբ քաղաքական, մշակութային, հայրենակցական եւ բարենպատակ կազմակերպութեանց:

Մանրամասնութիւնները յաջորդով:

---

### ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

Շ. Գարահիսարի «Հերոսամարտին» պատմութեան վերաբերեալ շատ կարեւոր հարցի մը համար, կը խնդրենք Փարիզի եւ շրջանի հայրենակիցներէն, անպայման ներկայ ըլլալ խորհրդակցական ժողովի մը, որ տեղի պիտի ունենայ այս կիրակի, առաւօտեան ժամը 10ին, Ազգ. Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ: Խումբ մը Գարահիսարցիներու կողմէ Ա. Գաբիկեան, Մկ. Գազանճեան:

---

### ՀԱՅԵՐԷՆ ԺԱՊԱՒԷՆԻ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

ՈՒԽՏԱՒՈՐՆԵՐ Ի ՎԵՆԵՏԻԿ

Ուրբաթ, Մայիս 3, երեկոյեան ժամը ճիշդ 9ին, Սէն Լու, Հայոց եկեղեցիի սրահին մէջ:

Կը նախագահէ Բժ. ԱԼՖՈՆՍ ՊԻՊԷՐԵԱՆ

Խօսնակ՝ Պ. ԱՐՄԻԿ ՅԱԿՈԲԵԱՆ

1956ի Մարսիլահայերու դէպի Վենետիկ Ուխտագնացութեան մասին պիտի խօսի՝

Պ. ՖԵՐՏԻ ԱՊԱՃԵԱՆ:

Սոյն ճամբորդութեան ժապաւէնի ցուցադրութիւնը կը կատարէ.—

Լուսանկարիչ Պ. ԳՐԻԳՈՐ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ

Շրջանիս Հայութիւնը սիրով կը հրաւիրուի այս հաւաքոյթին:

Մուտքը ազատ է:

---

Imprimerie Araxes, 46, Rue Richer,
Paris (9e) Pro. 05-73.

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՍԳԱՏՕՆ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

1915 Ապրիլ 11-24ի Եղեռնի 42րդ տարելիցին առթիւ:

Կազմակերպութեամբ Լիոնի եւ Շրջ. Հայ Ազգ. Միութեան Կեդր. Վարչութեան: Հովանաւորութեամբ Երեք յարանուանութեանց պետերուն եւ միահամուռ մասնակցութեամբ Լիոնահայ գաղութին:

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Պուրս տիւ Թրավայի սրահին մէջ, Փլաս Կիշար:

Կը նախագահէ Պ. Ա. ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ
(ատենապետ Ազգ. Միութեան)

Կը խօսի Պ. Կ. ՓՕԼԱՏԵԱՆ (Մարսէյլէն)

Խօսք պիտի առնէ

Պ. ԼԻՒՔ ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ

Առուր պատշաճի գեղարուեստական բաժին: Պիտի ըլլան նաեւ խնամեալ կերպով պատրաստուած խորհրդաւոր կենդանի նոր պատկերներ:

Մուտքը ազատ է:

---

## ԴԷՊԻ ՀԱՅԱՍՏԱՆ

Ֆրանսահայ Փոխադարձ Օգնութեան Միութեան զբօսաշրջիկներու խումբը այս տարի Հայաստան կը մեկնի Օգոստոսին սկիզբը:

Խումբին կրնան միանալ բոլոր փափաքողները անխտիր:

Արձանագրուելու համար դիմել նախագահին՝

Agop J. Nazarian
9, Ave. Calmels, Bois-Colombes (Seine)
Tél. CHA 00-55

---

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ 42ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Տեղի կ՚ունենայ Մայիս հինգի կիրակի երեկոյ, ժամը 8ին, Սէրքլը Կաթոլիքի սրահը:

Նախաձեռնութեամբ Վիէնի Վասպուրականի Հայր. Միութեան եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. կոմիտէին, Հայ. Կամ. եւ Մարտիկ. Միութեան, Հ. Մ. Ը. Մ.ի, Տարօնի, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի եւ Կապոյտ Խաչի:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Կը նախագահէ ԱԶԳԻՆ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ

Փարիզէն ներկայ կ՚ըլլան Վ. Կաքաւեան եւ երեք երիտասարդներ, ցուցաւոր ժապաւէնով մը որ կը ներկայացնէ այսօրուան Թրքահայաստանի վիճակը:

Մուտքը ազատ է:

Ծախսերու մասնակցութեամբ:

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ 42ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Շաբաթ, Մայիս 25, ժամը 21էն սկսեալ, Սէրքլը Միլիթէրի մէջ:



### ՊՏՈՅՏ ԴԷՊԻ Compiegne

Կազմակերպուած՝ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Առնուվիլի «Կառվարենց» մասնաճիւղին կողմէ, Մայիս մէկին, չորեքշաբթի:

Օթօքարը կը մեկնի Կառ տը Վիլիէ լը Պէլէն, առտուան ժամը 8.30ին:

Կը հրաւիրուին բոլոր ընկեր-ընկերուհիները:

ԾԱՆՕԹ.— Փարիզէն եւ արուարձաններէն եկողները, պէտք է Կառ տիւ Նորէն շոգեկառք առնեն ժամը 7.25ին:

### ՕՐ. ՀԵՂԻՆԷ ՏԷՐՏԷՐԵԱՆ
### Պ. ՍԵՊՈՒՀ ՃԱՆԻԿԵԱՆ

Նշանուած

21 Ապրիլ 1957, Մարսէյլ

*

Այս առթիւ Տէր եւ Տիկին Կ. Ճանիկեան երկու հազար Ֆր. կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման եւ երեք հազար Ֆր. Մշակոյթի Տան: (Վերջին գումարը ստանալ «Յառաջ»էն):

